*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 17 (36)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 17 (36)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը հաստատեց Հայկական ՍՍՌ Պետական Հիմնը՝ տեքստը պոետ Սարմենի, երաժշտությունը Հայկական ՍՍՌ արվեստի վաստակավոր գործիչ, կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի:

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ

*Սովետական ազատ աշխարհ՝ Հայաստան,*
*Բազում դարեր դաժան ճամբա դու անցար,*
*Քաջ նախնիք մեր մաքառեցին քեզ համար,*
*Որ դառնաս դու մայր-հայրենիք հայության:*

*Փառք քեզ, միշտ փառք, հերոսական Հայաստան,*
*Հանճարեղ դու ճարտարապետ-շինարար,*
*Ժողովրդոց սուրբ դաշինքով ստալինյան*
*Դու ծաղկում ես և կերտում լույս ապագա:*

Լենինն անմահ մեզ հուրն անշեջ պարգեվեց,
Մեր դեմ շողաց երջանկաբեր այգաբաց,
Ստալինը մեծ՝ կործանումից մեզ փրկեց
Եվ տվեց մեզ նոր, ազատ կյանք փառապանծ:

Փառք քեզ, միշտ փառք, վերածնված Հայաստան,
Հանճարեղ դու ճարտարագործ-շինարար,
Ժողովրդոց սուրբ դաշինքով ստալինյան
Դու ծաղկում ես եվ կերտում լույս ապագան:

Մեծ Ռուսիան մեզ եղբայրության ձեռք մեկնեց,
Մենք կերտեցինք ամրակուռ նոր պետություն,
Ոչ մի ոսոխ չի կարող ծնկի բերել
Անսասան ժողովրդին մեր հնազույն:

Փառք քեզ, միշտ փառք, Սովետական Հայաստան,
Հանճարեղ դու ճարտարագործ-շինարար,
Ժողովրդոց սուրբ դաշինքով ստալինյան
Դու ծաղկում ես եվ կերտում լույս ապագան:



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ

Andante maestoso.

Փառք քեզ, մեր փառք, հե - րո - սա - կան Հայ - աս - տան.

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ

1945 թվի օգոստոսի 12-ին, Հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ հնչեց նրա Պետական Հիմնը, որով մենք այսուհետև փառաբանելու ենք սովետական մեծ տերության եղբայրական ռեսպուբլիկաներից մեկի՝ Սովետական Հայաստանի ազատ, երջանիկ և լուսավոր կյանքը։

Դարեր շարունակ ազգային ինքնուրույն պետականությունից զրկված Հայ ժողովուրդը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ, Լենինի-Ստալինի ազատարար պարտիայի ղեկավարությամբ, թոթափեց դարավոր հալածանքի, իրավազրկության և շահագործման ծանր լուծը և ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ ձեռք բերեց ազատություն, ինքնուրույնություն և ազգային պետականություն։ Ազատագրված ու վերածնված Հայ ժողովուրդը Սովետական իշխանության կենսատու արևի տակ 25 տարիների ընթացքում ավելի շատ բան ըստացավ, քան իր պատմության անցած ավելի քան 20 դարերի ընթացքում։ Եվ եթե այսօր նա Ստալինյան Կոնստիտուցիայի հովանու տակ առաջին անգամ հըպարտորեն երգում է իր Պետական Հիմնը, ապա նրա այդ դարավոր իղձերի իրագործումը հնարավոր դարձավ միայն այն պատճառով, որ նա իր ճակատագիրը կապեց Ռուս մեծ ժողովրդի հետ, Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի և Սովետական իշխանության հետ։

Սովետական ազատ աշխարհ՝ Հայաստան
Բազում դարեր դաժան ճամբա դու անցար,
Քաջ նախնիք մեր մաքառեցին քեզ համար,
Որ դառնաս դու մայր-հայրենիք Հայության:

Այս հանդիսավոր ու ոգեշունչ խոսքերով է սկըսվում Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Պետական Հիմնը։ Հիրավի, բազում դարեր դաժան պայքարի փորձություններով լի հերոսական ճանապարհ է անցել հանճարեղ, ճարտարագործ ու շինարար Հայ ժողովուրդը։ Նա, որ աշխարհի հնագույն ժողովուրդներից մեկն է, իր ծագման ու կազմավորման առաջին օրից տքնաջան աշխատանքով ստեղծել է իր կուլտուրան, գրականությունը, ճարտարապետությունը, կառուցել է շեն քաղաքներ ու գյուղեր, և գիտական մեծ ավանդ մտցրել մարդկության պատմության գանձարանը։ Հայ ժողովրդի կուլտուրան նույնքան հին է, որքան հայ ժողովուրդն ինքը։

Սակայն մեր ճարտարագործ ու շինարար ժողովրդի պատմությունը լի է եղել տառապանքներով ու տանջանքներով, հերոսական ընդվզումներով ու ազատագրական պայքարով։ Բազում չարիքներ ու դժբախտություններ են բաժին ընկել Հայ ժողովրդին, որ դարեր շարունակ մաքառել է օտարերկրյա զավթիչների ծանր լծի դեմ։ Գտնվելով առևտրական և պատերազմական ուղիների խաչաձևման վրա, Հայաստանը դարձել էր կողոպտիչ արշավանքների ասպարեզ։ Նրա հողով ասպատակում ու անցնում էին զանազան աշխարհակալների հրոսակախմբեր՝ պարսիկները, արաբները, հռոմեացիք, բյուզանդացիք, մոնղոլները, սելջուկները, թյուրքերը, որոնք բնաջնջում էին ժողովրդին, հրի մատնում և մոխրակույտերի վերածում նրա հոյաշեն քաղաքները։ Սակայն որքան մոլեգնում էր բռնադատիչների ավազակային ճնշումներն ու հալածանքները, այնքան ավելի էր առնականանում Հայ



ժողովուրդը, հերոսաբար պայքարում իր ազատության ու անկախության համար։ Նրա քաջարի զավակները մաքառում էին, որպեսզի Հայաստանը դառնա ազատ ու երջանիկ։

Ծանր օրեր ապրեց հայ աշխատավորությունը դաշնակների տխրահռչակ տիրապետության տարիներին։ Սուրն ու սովն էր թագավորում դաշնակների «կառավարած» երկրում։ Հայաստանը կանգնած էր անկման վիհի եզրին։ Հայ ժողովրդի միակ փրկությունը սովետական կարգերի հաստատումն էր Հայաստանում։

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի բանվորները և աշխատավոր գյուղացիությունը Լենինի-Ստալինի հզոր պարտիայի ղեկավարությամբ, Ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ տապալեցին դաշնակների անարգ լուծը և երկրում հաստատեցին Սովետական Իշխանություն։ «Միայն Սովետական Իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն...»: (ՍՏԱԼԻՆ):

Սովետական Իշխանությունը Հայաստանի աշխատավորներին հնարավորություն տվեց սկսելու միանգամայն նոր կյանք, փրկված երկրի վրա առհավետ փողփողաց Լենինի-Ստալինի ազատարար դրոշը, Հայ ժողովրդի պատմության մեջ սկսվեց նոր դարաշրջան։ Հայկական ՍՍՌ Պետական Հիմնի հանդիսավոր բանատողերը փառաբանում են Հայ ժողովրդի պատմության այդ լուսապայծառ էջերը։

Լենինն անմահ մեզ հուրն անշեջ պարգևեց,
Մեր դեմ շողաց երջանկաբեր այգաբաց,
Ստալինը մեծ՝ կործանումից մեզ փրկեց
Եվ տվեց մեզ նոր, ազատ կյանք փառապանծ:

Անգնահատելի է Ռուս մեծ ժողովրդի ծառայությունը Սովետական պետության ստեղծման գործում,

ՍՍՌ Միության բոլոր եղբայրական ժողովուրդներին մի միասնական համերաշխ ընտանիքի մեջ համախմբելու գործում։ Ավելի քան անգնահատելի է Ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությունը մասնավորապես Հայ ժողովրդի ազատագրման գործում։ Դարե դար, սերունդե սերունդ կհնչեն Հայ ժողովրդի անսահման երախտագիտությամբ լի այս ջերմ ու նվիրական խոսքերը՝ ուղղված մեծ Ռուսիային.

Մեծ Ռուսիան մեզ եղբայրության ձեռք մեկնեց,
Մենք կերտեցինք ամրակուռ նոր պետություն,
Ոչ մի ոսոխ չի կարող ծնկի բերել
Անսասան ժողովրդին մեր հնագույն:

Բոլշևիկների մեծագործ պարտիայի Լենինյան-Ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ Հայ ժողովուրդը ձեռք բերեց իր ինքնուրույն պետականությունը և հավասարների մեջ հավասար անդամն է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Մեծ ընտանիքում։ Սովետական Իշխանության օրոք, Ստալինյան հնգամյակների տարիներին Հայաստանը կերպարանափոխվեց, դարձավ անճանաչելի, ծաղկող երկիր։ Նա հետամնաց ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ երկիր։ Երբեմնի հետամնաց հայ գյուղը Սովետական Իշխանության և կոլխոզային կարգերի շնորհիվ դարձավ ունևոր ու լուսավոր։ Տնտեսական շինարարության բնագավառում ձեռք բերած հաջողությունները ամուր հիմք ստեղծեցին ժողովրդական կրթության, կուլտուրայի, գիտության և արվեստի բուռն ծաղկման համար։ Հայաստանի գյուղերն ու քաղաքներն ունեն իրենց բազմաթիվ ուսումնական հաստատությունները, գիտության և կուլտուրայի օջախները։ Հայաստանի Գիտությունների Ակադեմիան դարձել է մեր ռեսպուբլիկայի գիտական մտքի կենտրոնը։ Հայկական ՍՍՌ Պետական Հիմնը իր մեջ մարմնա-



վորում է Հայ ժողովրդի մարտական կամքը, հպարտությունը, նրա մարտական և ակտիվ մասնակցությունը Սովետական ժողովրդի ազատագրական պայքարի հերոսական էպոպեային։
Հայ ռազմիկները, մեր ժողովրդի դյուցազուն զավակները Կարմիր Բանակի շարքերում հերոսաբար մարտնչեցին Հայրենական պատերազմի ճակատներում։ Հայ ժողովրդի զավակները Ռուս ավագագույն ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների զավակների հետ միասին իմաստուն առաջնորդ և մեծ զորավար Ստալինի ղեկավարությամբ ջարդ ու փշուր արին գերմանա-ֆաշիստական բանակներին, հաղթանակի դրոշը բարձրացրին Բեռլինի վրա, ջախջախեցին ճապոնական ագրեսորին։ Սովետական Միության ժողովուրդների, այդ թվում Հայ ժողովրդի պատմության մեջ սկսվում է նոր շրջան— խաղաղ, ստեղծագործական աշխատանքի շրջան։
Հայկական ՍՍՌ Պետական Հիմնը կդառնա Հայ ժողովրդի փառքի երգը և սերունդներին որպես պատգամ կավետի.

— Փառք քեզ, միշտ փառք, Սովետական Հայաստան,
Հանճարեղ դու ճարտարագործ-շինարար,
Ժողովրդոց սուրբ դաշինքով Ստալինյան,
Դու ծաղկում ես և կերտում լույս ապագադ:

# ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ ՌՈՒՍ ՄԵԾ ԺՈՂՈՎՐԴԻՆ

*Մեծ Ռուսիան մեզ եղբայրության ձեռք*
*մեկնեց,*
*Մենք կերտեցինք ամրակուռ նոր պետություն,*
*Ոչ մի ուժ չի կարող ծնկի բերել*
*Անսասան ժողովրդին մեր հնագույն:*
*(Հայկ. ՍՍՌ Պետական Հիմնից)*

Ցնծության բերկրալի օրեր է ապրում սովետական ժողովուրդը: Նա փառաբանում է հարազատ Կարմիր Բանակին, որը մեր դաշնակիցների զորքերի հետ միասին ծունկի բերեց ֆաշիստական Գերմանիային և Ճապոնիային, նվաճեց պատմության մեջ աննախընթաց հաղթանակ:

Այդ հաղթանակը արմատապես փոխեց միջազգային իրադրությունը: Սովետական պետությունը ավելի բարձր և արժանավոր տեղ գրավեց համաշխարհային արենայում: Դրան որպես փայլուն ապացույց կարող է ծառայել հենց վերջերս ավարտված Երեք Տերությունների Ղեկավարների Բեռլինի Կոնֆերանսը, որն ամրապնդեց գերմանական իմպերիալիզմի դեմ ձեռք բերված պատմական հաղթանակները, ուժեղացրեց մեծ դաշնակիցների միջև եղած բարեկամա-



կան կապերը և խաղաղության ամուր հիմքեր դրեց ամբողջ աշխարհում:

Սովետական երկրի բոլոր նշանավոր հաջողությունների և նվաճումների մեջ առաջատար դերը պատկանում է ռուս մեծ ժողովրդին, որը մարդկության երջանկության ու բերկրալի ապագայի համար մղված դյուցազնական ճակատամարտում դրսևորեց իր բնավորության վեհ և ազնիվ հատկությունները՝ անսահման սեր դեպի Հայրենիքը, հերոսություն, պայծառ միտք, տոկունություն և համբերություն: Ռուս ժողովուրդը Հայրենական Մեծ պատերազմում հանդիսացավ Սովետական Միության առաջատար ուժը և իրավամբ նվաճեց ինչպես մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր ժողովուրդների անսահման սերն ու երախտագիտությունը, այնպես էլ մեծ հեղինակություն ձեռք բերեց բոլոր ազատասեր ժողովուրդների մոտ: Ահա թե ինչու Սովետական Միության բոլոր ժողովուրդները անսահման հրճվանքով ընդունեցին 1945 թվի մայիսի 24-ին Կրեմլի Մեծ պալատում, ի պատիվ ռուս ժողովրդի ընկեր Ստալինի առաջարկած կենացը:

Սովետական ամեն մի մարդու համար անսահման հարազատ են հնչում ստալինյան փառապանծ խոսքերը.

«Ես խմում եմ նախ և առաջ ռուս ժողովրդի կենացը, այն պատճառով, որ նա Սովետական Միության կազմի մեջ մտնող բոլոր ազգերից առավել ականավոր ազգն է:

Ես բաժակ եմ բարձրացնում ռուս ժողովրդի կենացը այն պատճառով, որ նա այս պատերազմում արժանացավ ընդհանուր ճանաչման, որպես Սովետական Միության ղեկավար ուժ՝ մեր երկրի բոլոր ժողովուրդների մեջ:

Ես բաժակ եմ բարձրացնում ռուս ժողովրդի կենացը, ոչ միայն այն պատճառով, որ նա ղեկավար

ժողովուրդ է, այլև այն պատճառով, որ նա ունի պայծառ միտք, տոկուն բնավորություն և համբերություն»:

Մեծ Ստալինի կողմից ռուս ժողովրդին տված այս բարձր գնահատականը առանձնապես մոտ ու հարազատ է հայ ժողովրդին:

Դա իր արտահայտությունն է գտել Հայկական ՍՍՌ Պետական Հիմնի մեջ, որն առաջին անգամ հնչեց 1945 թվի օգոստոսի 12-ին.

Մեծ Ռուսիան մեզ եղբայրության ձեռք մեկնեց,
Մենք կերտեցինք ամրակուռ նոր պետություն,
Ոչ մի ոսոխ չի կարող ծնկի բերել
Անպարտ ժողովրդին մեր հնադարյան:

Հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը բազմադարյան պատմություն ունի: Հայ ժողովուրդը միշտ էլ վայելել է իր ավագ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի ամենաակտիվ օժանդակությունը, ինչպես օտարերկրյա զավթիչների դեմ, այնպես էլ ցարական ինքնակալության դեմ մղած ազատագրական պայքարում, կուլտուրայի, տնտեսության զարգացման և ինքնուրույն պետականություն ստեղծելու գործում:

Հայ և ռուս ժողովուրդների մարտական համագործակցությունը բազմաթիվ փայլուն օրինակներ ունի: Դեռևս 11-րդ դարում հայկական ջոկատները ռուսական զորքերի հետ կողք-կողքի պայքարում էին պոլովցիների դեմ, պաշտպանելով Կիևյան Ռուսիայի անկախությունը:

15-րդ դարի սկզբում, երբ գերմանական ագրեսիան սկսեց սպառնալ սլավոնական աշխարհին, այդ թվում նաև Ռուսիային, սլավոնական-ռուսական հաղթական գնդերի շարքերում 1410 թվին Գրյունվալդի դաշտերում մարտնչում էին նաև հայկական երկու ջոկատ:



14-րդ դարի կեսերին, Կիլիկիայի հայկական թագավորության անկումով, հայերը լիովին կորցրին իրենց պետական անկախությունը և Հայաստանը բաժանվեց օսմանյան Թյուրքիայի և Պարսկաստանի միջև: Հայաստանն այդ ժամանակ,— ինչպես ասում է պատմաբան Լեոն,— «սուգի հայրենիք դարձավ, հայոց վարդերն ու մանուշակները չորացան, քաղցրահամ աղբյուրները արյունոտ եղան, հայը թափառական՝ ընկավ երկրից-երկիր»:

Այդ ծանր օրերին թափառական հայերի համար ամենահյուրընկալ երկիրը եղավ մեծ Ռուսիան: Նա բացեց իր դռները և ապաստան տվեց թաթար-մոնղոլների, թյուրք-պարսիկների կողմից պանդուխտ դարձած հայերին:

Ռուսաստանում մեկը մյուսի ետևից կազմակերպվեցին հայաբնակ գաղութներ՝ Ղզլարը, Մոզդոկը, Աստրախանը, Նոր Նախիջևանը, Գրիգորիոպոլիսը և ուրիշները: Այդ գաղութներում վերածնվեց տնտեսական կյանքը և հայ վաճառականները սկսեցին շրջագայել ամբողջ Ռուսաստանը: 1667 թվին Ռուսաստանում հայկական առևտրի զարգացմանը նպաստելու նպատակով Ալեքսեյ Միխայլովիչ ցարի և հայ առևտրական պատգամավորության միջև հատուկ պայմանագիր կնքվեց:

Հայերի և ռուսների միջև քաղաքական ավելի սերտ հարաբերություններ սկսվեցին Պյոտր Առաջինի ժամանակ: Հայ ժողովրդի անունից հանդես եկավ Ղարաբաղի հայ մելիքների ներկայացուցիչ Իսրայել Օրին: 1701 թվին Օրին գալիս է Ռուսաստան և սկըսում գործարար բանակցություններ, որի արդյունքը եղավ ռուսական բանակի 1722 թվի պարսկական արշավանքը: Այդ արշավանքը չլուծեց հայերի ազատագրության հարցը, բայց նրանց մեջ ավելի քան հաստատ հավատ ներշնչեց դեպի ռուս ժողովրդի ուժը:

Հայ-ռուս քաղաքական հարաբերությունները նոր

ումով վերսկսվեցին Եկատերինա 2-րդի թագավորու-
թյան շրջանում: Այդ ժամանակ ռուսների հետ բա-
նակցություններ էին վարում Հովսեփ Արղությանը և
Լազարյանները:

Հայերի հավատը դեպի ռուսները այնքան է ամ-
րապնդվում, որ նույնիսկ հեռավոր Հնդկահայ գա-
ղութում առաջ եկած ազատագրական շարժման նշա-
նավոր ղեկավարներ Հովսեփ Էմինը և, ապա մի
փոքր ուշ՝ Շահամիր Շահամիրյանը հայերի ազատա-
գրման հույսը ավելի ևս սերտ կերպով կապում են
ռուս մեծ ժողովրդի օգնության և այդ նպատակով
գործարար բանակցություններ են սկսում Ռուսաստա-
նի հետ:

Ի հակադրություն ռուս մեծ ժողովրդի այսպիսի
վերաբերմունքի, հայերը իրենց ազատագրության
համար մղած պայքարում ոչ մի իրական օգնություն
չեն ստացել Արևմտյան Եվրոպայի տերություններից
և դառնությամբ են համոզվել, որ եվրոպացիները ի-
րենց կերակրել են դատարկ հույսերով ու խոստում-
ներով: Հայ ժողովուրդը իր բոլոր հույսերը դնում է
ռուս մեծ ժողովրդի վրա և նրա մեջ է տեսնում այն
միակ ռեալ ուժը, որն ընդունակ է հայերին փրկելու
թյուրք-պարսկական լծից:

1801 թվին, երբ Վրաստանը միացվեց Ռուսաս-
տանին, նախադրյալներ ստեղծվեցին նաև Հայաստա-
նի միացման հարցի լուծումը արագացնելու համար:

19-րդ դարի սկզբին ռուսական բանակները և
նրանց հետ միասին հայկական զինված ջոկատները
ռազմական ակտիվ գործողություններ են սկսում
Պարսկաստանի դեմ՝ հայկական մարզերը Պարսկաս-
տանի լծից ազատագրելու և դրանք Ռուսաստանին
միացնելու համար: Սակայն այն ժամանակ, երբ ռու-
սական զորքերը կռվում էին Ղարաբաղի, Շիրակի և
Արարատի դաշտերում, Նապոլեոնի զավթիչ բանակ-
ները ներխուժեցին Ռուսաստան և ռուս ժողովուրդը



կենաց և մահու պայքարի դուրս եկավ իր ազատու-
թյան և անկախության համար:

Հայ ժողովուրդը անմասն չմնաց այդ պայքարից.
նա իր համեստ օգնությունը ցույց տվեց ռուս ժողո-
վրդին: Տասնյակ հայ զորավարներ ռուսական գըն-
դերի գլուխ անցած խիզախորեն մարտնչեցին Նապո-
լեոնի բանակները ջախջախելու համար: Իր խիզա-
խությամբ և անվեհերությամբ առանձնապես աչքի
ընկավ գեներալ Մադաթովը, որը հռչակվեց Վարշա-
վայի մոտ թշնամու թիկունքում մղած հաջող գործո-
ղություններով և պարտիզանական պատերազմի մե-
թոդներով: Նրա անունը երկրորդ անգամ հռչակվեց
1813 թվին Լայպցիգի տակ մղած ճակատամարտում,
իսկ 1814 թվին ռուսական հաղթական բանակի շար-
քերում նա մտավ պարտված Փարիզը:

1812 թվի հայրենական պատերազմի ժամանակ
հռչակվեց նաև հայ գեներալ Դավիթ Դելյանովը՝ Բո-
րոդինոյի ճակատամարտի զորավարներից մեկը: Նա
նույնպես ռուսական բանակի հետ մտավ Փարիզը:

1812 թվի հայրենական պատերազմում հռչակ-
վեցին նաև գեներալներ՝ Աբամելիքը, Պավել Մելիքո-
վը և ավելի քան 20 այլ հայ զորավարներ: 1812 թվի
հայրենական պատերազմի հայ մասնակիցներից շա-
տերը իրենց խիզախության և արիության համար
պարգևատրվեցին կառավարական բարձր շքանշաննե-
րով և տարբերանշաններով: Ալեքսանդր Առաջին ցա-
րը հատուկ հրովարտակով շնորհակալություն հայտ-
նեց Ռուսաստանում ապրող հայերին՝ նրանց ցուցա-
բերած ակտիվ օգնության և հայրենասիրության հա-
մար:

1812 թվի հայրենական պատերազմի հաղթական
ավարտումից հետո պատերազմական գործողություն-
ները Պարսկաստանի դեմ վերսկսվեցին նոր ուժով,
և 1828 թվին պարտված Պարսկաստանը Թուրքմեն-
չայի պայմանագրով հայկական մարզերը վերջնակա-
նապես հանձնեց Ռուսաստանին:

Կատարվեց հայ ժողովրդի դարավոր իղձը: Հայաստանը թոթափեց պարսկական լուծը և միացավ Ռուսաստանին: Այդ ակտով հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական ոչնչացումից և իր բախտը ամուր կերպով կապեց ռուս մեծ ժողովրդի բախտին:

Հայաստանը Ռուսաստանին միացվելով, սակայն հայ ժողովուրդը լրիվին չազատագրվեց ճնշումից: Նա ենթարկվում էր ցարական ինքնակալության բռնություններին ու գաղութացման: Միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան վերջնական ազատություն բերեց «տանջված ու չարչարված Հայաստանին»:

Հայ իրականության վրա մեծագույն բարերար ազդեցություն ունեցան ռուս մեծ ժողովրդի, Լենինի ու Պլեխանովի, Բելինսկու և Չերնիշևսկու, Պուշկինի և Տոլստոյի, Գլինկայի և Չայկովսկու, Գորկու և Չեխովի, Սեչենովի և Պավլովի, Ռեպինի և Սուրիկովի, Լոմոնոսովի և Ցիոլկովսկու, Սուվորովի և Կուտուզովի ժողովրդի հիասքանչ կուլտուրան, գիտությունը և ռևոլյուցիոն միտքը:

Ռուսաստանի հնագույն մայրաքաղաքում՝ Մոսկվայում դեռևս 19-րդ դարի սկզբում հիմնվեց Լազարյան ճեմարանը, որը խոշոր դեր խաղաց հայ ժողովրդին ռուսական առաջավոր կուլտուրային հաղորդակից դարձնելու, ինչպես նաև հայկական հնադարյան կուլտուրան ռուսական լայն շրջաններին ծանոթացնելու գործում:

19-րդ դարի կեսերին ռուս լուսավորիչների ազդեցության տակ հանդես եկավ և իր փառահեղ գործունեությունը ծավալեց հայ լուսավորիչների մի ամբողջ սերունդ:

19-րդ դարի 50-ական թվականներին Մոսկվայում սկսեց լույս ընծայվել «Հյուսիսափայլը», որը գնում էր հռչակավոր «Սովրեմեննիկի» հետքերով:



Պուշկինի և Տոլստոյի, Չեխովի և Գորկու և ռուսական ամբողջ՝ պրոգրեսիվ գրականությունը իր հեղաշրջող խոշոր ու փառավոր ազդեցությունն ունեցավ հայ գրականության վրա:

20-րդ դարը նոր էրա բացեց ռուս ժողովրդի պատմության մեջ:

Պատմության արենա իջավ ռուս բանվոր դասակարգը, որպես քաղաքական հզոր մի ուժ, որպես համաշխարհային բանվոր դասակարգի ամենամարտական ջոկատը:

Դեռևս 1894 թվին Վ. Ի. Լենինը նախատեսում էր, որ ռուսական բանվոր դասակարգը, կանգնելով բոլոր դեմոկրատական տարրերի գլուխ, կտապալի բացարձակ ինքնակալությունը և կգնա կոմունիստական ռևոլյուցիայի հաղթական ուղիով:

Կատարվեց Լենինի կանխատեսությունը:

20-րդ դարի սկզբներին Ռուսաստանն արդեն դարձավ ռևոլյուցիայի մարտական օջախը՝ պրոլետարիատի ռևոլյուցիոն թեորիայի՝ մարքսիզմ-լենինիզմի հայրենիքը:

Լենինի և Ստալինի ղեկավարությամբ հրապարակ իջավ բոլշևիկների փառապանծ պարտիան, որի գըլխավորությամբ ռուսական ռևոլյուցիոն պրոլետարիատը մեկը մյուսի ետևից կատարեց երեք ռևոլյուցիա՝ 1905 թ. և 1917 թ. բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաները և 1917 թ. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան: Ռուսական պրոլետարիատն էր, որ հիմք դրեց առաջին սոցիալիստական պետությանը՝ նոր տիպի պետությանը և դրանով իսկ նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ:

Ռուս ռևոլյուցիոն ժողովրդի, նրա առաջավոր ջոկատի՝ բանվոր դասակարգի և բոլշևիկների պարտիայի անմիջական օգնությամբ ու ղեկավարությամբ հայ ժողովուրդը կանգնեց իր զարգացման միակ ճիշտ ուղու՝ սովետական սոցիալիստական ռևոլյու-

ցիայի ուղու վրա։ Ռուս ժողովրդի և երիտասարդ-
Կարմիր Բանակի օգնությամբ էր, որ առաջին հա-
մաշխարհային պատերազմի ժամանակ դըրդյունով
տապալվեցին գերմանական իմպերիալիստների և սուլ-
թանական Թյուրքիայի գիշատիչ պլանները՝ նվաճելու
Հայաստանը և բնաջնջելու բոլոր հայերին։

Հայ ժողովուրդը ռուս ժողովրդի և Կարմիր Բա-
նակի օգնությամբ թոթափեց նաև դաշնակների կար-
ճատև և անփառունակ տիրապետությունը և ստեղծեց
իր ազատ ու անկախ սոցիալիստական ռեսպուբլի-
կան։

Սովետական իշխանության և ռուս ժողովրդի ա-
մենօրյա օգնության շնորհիվ ամենակարճ ժամանա-
կում, երբեմնի ավեր Հայաստանը վերածվեց ծաղկուն
երկրի՝ իր զարգացած արդյունաբերությամբ, կոլխո-
զային գյուղատնտեսությամբ, առաջավոր կուլտուրա-
յով ու գիտությամբ։

Սովետական բոլոր ժողովուրդների, այդ թվում և
հայ ժողովրդի համար ծանր օրեր սկսվեցին 1941
թվին, երբ գերմանա-ֆաշիստական հորդաները ներ-
խուժեցին սովետական երկիրը։

Ահավոր օրեր էր ապրում 1942 թվին արևավառ
Հայաստանը, երբ ֆաշիստական հորդաները հասան
Կովկասյան ալեհեր լեռներին։ Սակայն այս անգամ
էլ խորտակվեցին գերմանական գիշատիչ իմպերիա-
լիստների արյունոտ պլանները։ Կարմիր Բանակը,
սովետական բոլոր ժողովուրդները՝ ռուս ժողովրդի
գլխավորությամբ՝ պաշտպանեցին Կովկասը ֆաշիս-
տական հորդաների ներխուժումից, դրանով իսկ հայ
ժողովուրդն այս անգամ էլ փրկվեց իրեն սպառնա-
ցող ֆիզիկական բնաջնջումից։

Իրենց հերթին հայ ժողովրդի քաջարի զավակ-
ներն անձնվիրությամբ կռվեցին սովետական ամբողջ
Հայրենիքի՝ մեծ Ռուսիայի, եղբայրական Ուկրաինա-
յի, Բելոռուսիայի և մյուս սովետական ռեսպուբլի-



կաների ազատության ու անկախության պաշտպա-
նության համար։

Հայրենական պատերազմի ռազմաճակատներում աճե-
ցին և իրենց պատվավոր տեղը գրավեցին սովետա-
յան գեներալների շարքում մոտ 50 հայ գեներալներ։

Սովետական Միության հերոսների շարքում կան
ավելի քան 90 հայեր, որոնք մարտնչել են հերոսա-
բար Կովկասի, Մոսկվայի, Ստալինգրադի, Լենին-
գրադի, Սևաստոպոլի, Օդեսայի և սովետական շատ
ուրիշ քաղաքների ու գյուղերի համար։

Հայրենական պատերազմում մեծ անուն հանեց
Հայկական 89-րդ Թամանյան եռակի շքանշանակիր
հրաձիգ դիվիզիան։ Թամանյան դիվիզիան անցավ
մարտական փառահեղ մի ուղի՝ Երևանից մինչև
Բեռլին։ Նա արժանացավ Բեռլինի անկման մասին
մեծ Ստալինի պատմական հրամանում նշվելու պատ-
վին, որպես Բեռլին ներխուժած առաջին դիվիզիանե-
րից մեկը։

Այժմ մեր երկիրը հաղթականորեն ավարտել է
պատերազմը և թևակոխել խաղաղ ժամանակաշրջան։
Հայաստանի աշխատավորությունը ձեռնամուխ է ե-
ղել խաղաղ ստեղծարար շինարարության։ Նա սովե-
տական իշխանության, բոլշևիկների պարտիայի և
հանճարեղ առաջնորդ մեծ Ստալինի գլխավորությամբ,
ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, կկառուցի իր եր-
ջանիկ ու լուսավոր ապագան։

Շնորհակալություն ռուս ժողովրդին՝ հայ ժողո-
վրդի դարավոր մեծ բարեկամին։

Զ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

(Պատմական գիտությունների թեկնածու)

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

ՎՖ 02075 *Պատվեր № 1231, Տիրաժ 5.000*
Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից Թերթերի և ամսագրերի
տպարան, Երևան